Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9 ՄԱՅԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զեկուցումների և զրույցների համար



Կազմակերպիր զրույց



Ագիտացիոն աշխատանքի փորձից



Օգտագործիր զրույցի ժամանակ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱՆՇԵՂՈՐԵՆ ՎԱՐԵԼ ՈՒ ՎԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Սովետական պետության գոյության առաջին իսկ օրերից բոլշևիկների պարտիան, սովետական կառավարությունը վարել են ու հետևողականորեն շարունակում են վարել խաղաղասիրական քաղաքականություն: Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը, որը բխում է սովետական կարգերի բուն էությունից, հսկայական ժողովրդականություն է վայելում ամբողջ աշխարհում: Երկրագնդի աշխատավոր մարդկությունը հույսով ու հավատով է նայում Սովետական Միությանը, որպես ժողովուրդների միջև երկարատև ու կայուն խաղաղության պաշտպանության հզոր ամրոցի:*

*Ի. Վ. Ստալինը դեռևս 1917 թվականին ՌՍԴԲՊ (բոլշևիկների) 6-րդ համագումարում ընդգծել է, որ մեր երկրում աշխատավորության նպատակն է «տապալելով կալվածատերերին և սանձահարելով իմպե-*

րիալիստական. բուրժուազիային՝ վերջացնեն պատերազմը, ապահովեն հաշտության գործը» (Ի. Ստալին, Երկեր, հ. 3, էջ 196)։

✪ 1917 թվականի նոյեմբերի 8-ին, Պետրոգրադում բանվորների և զինվորների դեպուտատների Համառուսաստանյան 2-րդ համագումարում ընդունվեց մեծ Լենինի կողմից գրված դեկրետը հաշտության մասին։ Սովետական կառավարության դիվանագիտական առաջին փաստաթուղթ հանդիսացող հաշտության վերաբերյալ դեկրետը պարունակում էր Սովետական կառավարության խաղաղասիրական առաջարկը բոլոր պատերազմող ժողովուրդներին և նրանց կառավարություններին՝ սկսել պատերազմի դադարեցման մասին բանակցությունները և հաստատել խաղաղություն բոլոր ժողովուրդների համար։

Ամերիկյան, անգլիական և ֆրանսիական իմպերիալիստները, որոնց համար պատերազմը հանդիսանում է գերշահույթներ ստանալու միջոց, շահագրգռված էին առաջին համաշխարհային սպանդը շարունակելու, որի համար էլ մերժեցին երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկայի խաղաղասիրական առաջարկը։ «Հենց անգլո-ֆրանսիական և ամերիկյան բուրժուազիան չընդունեց



մեր առաջարկը, հենց նա հրաժարվեց մեզ հետ ընդհանուր հաշտության մասին նույնիսկ խոսելուց։ Հենց նա դավաճանորեն վարվեց բոլոր ժողովուրդների շահերի նկատմամբ, հենց նա ձգձգեց իմպերիալիստական սպանդը»,— նշել է Վ. Ի. Լենինը իր նշանավոր «Նամակ ամերիկյան բանվորներին» աշխատության մեջ (Երկեր, հատ. 28, էջ 61)։

✪ Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը վառ կերպով դրսևորվեց Ճենովայի 1922 թվականի կոնֆերանսում։ Այդ մասին ընկեր Ի. Վ. Ստալինը գրել է. «Մենք խաղաղության քաղաքականություն ենք վարում և մենք պատրաստ ենք փոխադարձ չհարձակման պակտեր ստորագրելու բուրժուական պետությունների հետ։ Մենք խաղաղության քաղաքականություն ենք վարում և մենք պատրաստ ենք զինաթափման վերաբերյալ համաձայնության դիմելու, ընդհուպ մինչև մշտական բանակների լիակատար ոչնչացումը, որի մասին մենք ամբողջ աշխարհի առաջ հայտարարել ենք դեռևս Ճենովայի կոնֆերենցիայում» (Ի. Ստալին, Երկեր, հ. 10, էջ 141)։

✪ 1924 թվականին «ՌԿ(բ)Պ 13-րդ համագումարի հանրագումարների մասին» իր զեկուցման մեջ ընկեր Ի. Վ. Ստալինը ասում

էր. «որ մեր երկիրը աշխարհում միակ երկիրն է, որն ընդունակ է վարելու և իրոք վարում է խաղաղության քաղաքականություն, վարում է այն ո՛չ թե փարիսեցիաբար, այլ ազնվորեն ու բացահայտ կերպով, վճռականորեն և հետևողական կերպով:

Այժմ բոլորն ընդունում են, թե՛ թշնամիները, թե՛ բարեկամները, որ մեր երկիրը միակ երկիրն է, որն իրավամբ կարող է ամբողջ աշխարհում խաղաղության քաղաքականության պատվարն ու դրոշակակիրը կոչվել» (Ի. Ստալին, Երկեր, հ. 6, էջ 278):

✪ Խոսելով Սովետական Միության արտաքին քաղաքականության հիմնական խնդիրների մասին, 1925 թվականին, պարտիայի 14-րդ համագումարում ընկեր Ի. Վ. Ստալինը մատնանշել է. «Մեր կառավարության քաղաքականության, արտաքին քաղաքականության հիմքը կազմում է խաղաղության իդեան: Պայքար հանուն խաղաղության, պայքար ընդդեմ նոր պատերազմների, այն բոլոր քայլերի մերկացում, որոնք կատարվում են նոր պատերազմ նախապատրաստելու նպատակով... այս է մեր խնդիրը» (Ի. Ստալին, Երկեր, հ. 7, էջ 325):

✪ 1927 թվականին ՍՍՌՄ-ը կապիտալիստական պետություններին առաջարկեց ի-



րականացնել ընդհանուր և լիակատար զինաթափում, 1928 թվականին առաջարկեց անցկացնել մասնակի զինաթափում, իսկ 1932 թվականին Ժնևի կոնֆերանսում առաջարկություն մտցրեց սպառազինությունների լայն սահմանափակման մասին:

✪ Համառ պայքար մղելով իմպերիալիստական պետությունների ագրեսիվ քաղաքականության դեմ, Սովետական Միությունը 1933 թվականին մի շարք կոնվենցիաներ կնքեց ագրեսիա հասկացողության բնորոշման և նրա արգելման մասին: Ագրեսիայի սովետական բնորոշումը դուրս եկավ այնքան գիտական ու կարևոր, որ այժմ, երբ քաղաքական միտքը նորից վերադառնում է ագրեսիա հասկացողության բնորոշմանը, ելնում է սովետական բնորոշման հիմնական սկզբունքներից:

✪ 1934 թվականին, 34 պետությունների հրավերով Սովետական Միությունը մտավ Ազգերի Լիգայի մեջ և այնուհետև հետևողականորեն օգտագործեց Լիգայի յուրաքանչյուր սեսիան, նրա յուրաքանչյուր օրգանը ագրեսիայի դեմ, խաղաղությունն ամբողջ աշխարհում ամրապնդելու համար:

Խաղաղության համար մղվող պայքարում կարևորագույն ներդրում հանդիսացան կո-

լեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծման մասին սովետական առաջարկները։

«Պատմության կեղծարարները» պատմական տեղեկանքում ասված է. «Նախապատերազմյան ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում սովետական դելեգացիան Ազգերի Լիգայում պաշտպանում էր կոլեկտիվ անվտանգության սկզբունքը, իր ձայնը բարձրացնելով ի պաշտպանություն այդ սկզբունքի Ազգերի Լիգայի համարյա յուրաքանչյուր նիստում, Ազգերի Լիգայի համարյա յուրաքանչյուր հանձնաժողովում։ Բայց, ինչպես հայտնի է, սովետական դելեգացիայի ձայնը մնաց բարբառո հանապատի» (էջ 16)։

✪ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին Սովետական Միությունը մերկացնելով ֆաշիստական «խաղաղարարների» մյունխենյան տխրահռչակ քաղաքականությունը (որի նպատակն էր սանձազերծել երկրորդ համաշխարհային պատերազմը Եվրոպայում), ակտիվ կերպով օգնություն էր ցույց տալիս ագրեսիայի զոհ դարձած և իրենց հայրենիքի անկախության համար մարտնչող ժողովուրդներին։

Ընկեր Ի. Վ. Ստալինը մերկացնելով այդ ժամանակաշրջանում անգլո-ֆրանսիական կառավարող շրջանների վարած «չմիջամտելու» քաղաքականությունը, 1939 թվականի մարտին ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում մատնանշեց, որ «չմիջամտելու քաղաքականությունը նշանակում է ագրեսիայի թողտվություն, պատերազմի սանձազերծում,— հետևաբար, նրա վերածումը համաշխարհային պատերազմի։ Չմիջամտելու քաղաքականության մեջ ձգտում, ցանկություն է նըկատվում՝ չխանգարել ագրեսորներին իրենց սև գործը կատարելու, չխանգարել, ասենք, Ճապոնիային՝ պատերազմի բռնվելու Չինաստանի դեմ, իսկ է՛լ ավելի լավ է՝ Սովետական Միության դեմ, չխանգարել, ասենք, Գերմանիային՝ խրվելու եվրոպական գործերի մեջ, պատերազմի բռնվելու Սովետական Միության դեմ, պատերազմի բոլոր մասնակիցներին հնարավորություն տալ խորը խրվելու պատերազմի ճահճուտը, գաղտագողի խրախուսել նրանց այդ բանում, թույլ տալ, որ նրանք թուլացնեն և հյուծեն միմյանց, իսկ հետո, երբ նրանք բավականաչափ կթուլանան,— թատերաբեմ ելնել թարմ ուժերով, հանդես գալ, իհարկե, «հօգուտ խաղաղության շահերի», և պատերազմի թուլացած մասնակիցներին թելադրել իր պայմանները» («Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ. էջ 694)։

✪ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Սովետական Միության գըլխավոր խնդիրն էր հաղթանակ ձեռք բերել ֆաշիստական բլոկի դեմ և միաժամանակ պայմաններ ստեղծել հետպատերազմյան ժամանակաշրջանում կայուն և երկարատև խաղաղություն հաստատելու համար։

«...պատերազմը շահելը դեռևս չի նշանակում ժողովուրդների համար ապահովել հաստատուն խաղաղությունը և հուսալի անվտանգությունն ապագայում,— ասել է ընկեր Ի. Վ. Ստալինը,— խնդիրը ո՛չ միայն պատերազմի շահելն է, այլև նոր ագրեսիայի և նոր պատերազմի առաջացումն անհնարին դարձնելը եթե ոչ ընդմիշտ, ապա գոնե տևական ժամանակամիջոցի ընթացքում» (Ի. Ստալին, «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին», 5-րդ հրատ., էջ 198)։

✪ Ժողովուրդների համար կայուն խաղաղություն ապահովելու նպատակով դեռևս 1941 թ. հուլիսի 3-ի իր ռադիո-ելույթում ընկեր Ստալինը տվեց Միավորված Ազգերի կազմակերպության ստեղծման գաղափարը։ 1943 թվականին, պատասխանելով խաղաղության ապահովման միջազգային կազմակերպության ստեղծման հնարավորություն-



ների մասին օտարերկրյա թղթակից Մ. Կինգի տված հարցին, ընկեր Ստալինը նշում էր, որ այդ կազմակերպությունը պետք է հիմնըված լինի ժողովուրդների համագործակցության և նրանց հավասար իրավունքների վրա։

✪ Միավորված Ազգերի կազմակերպությունում Սովետական Միության քաղաքականության մասին ընկեր Վ. Մ. Մոլոտովը նշել է. «Այդ կազմակերպության մեջ մեր մասնակցությունը նպատակ ունի, որ այդ կազմակերպությունը գործունակ դեր խաղա նոր պատերազմները կանխելու և բոլոր ու ամեն տեսակի իմպերիալիստական ագրեսորներին ու մյուս ժողովուրդների կամքի բռնադատիչներին սանձահարելու գործում» (Վ. Մ. Մոլոտով. «Արտաքին քաղաքականության հարցերը», էջ 26)։

Ամերիկա-անգլիական իմպերիալիստները Միավորված Ազգերի կազմակերպությունում ունենալով մեխանիկական մեծամասնություն, այն վերածել են ագրեսիայի գործիքի, նոր համաշխարհային պատերազմի հրահրման միջոցի։ «Միավորված Ազգերի կազմակերպությունը,— ասում է ընկեր Ի. Վ. Ստալինը,— այդպիսով, կանգնում է Ազգերի Լիգայի անփառունակ ուղու վրա։ Դրանով

իսկ նա թաղում է իր բարոյական հեղինակությունը և իրեն մատնում է քայքայման» (Ի. Վ. Ստալին. «Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ». էջ 13)։

✪ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը վառ կերպով արտահայտվում է մեր երկրում խաղաղ տընտեսական շինարարության բնագավառում ձեռք բերված փայլուն նվաճումների մեջ։ Սովետական երկրի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան զբաղված են խաղաղ ստեղծագործ աշխատանքով։ Հաջողությամբ կատարելով և գերակատարելով հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանի հիմնական խնդիրները, սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումներին։

Ընկեր Ստալինը 1951 թվականի փետրվարին «Պրավդա»-ի թղթակցի հարցերին տված պատասխաններում նշեց, «որ ոչ մի պետություն, այդ թվում և Սովետական պետությունը, չի կարող ամբողջ թափով ծավալել քաղաքացիական արդյունաբերությունը, սկսել Վոլգայի, Դնեպրի, Ամու-Դարիայի հիդրոկայանների նման մեծ կառուցումներ, որոնք պահանջում են տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, շարունակել մասսայա-



կան սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցման քաղաքականությունը, որը նույնպես պահանջում է տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, հարյուրավոր միլիարդներ ներդնել գերմանական օկուպանտների ավերած ժողովրդական տընտեսության վերականգնման գործում և դրա հետ միասին, դրա հետ միաժամանակ, բազմապատկել իր զինված ուժերը, ծավալել ռազմական արդյունաբերությունը» (Ի. Վ. Ստալին. «Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ», էջ 4—5)։

✪ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը արտահայտվում է նաև Պետական բյուջեի մեջ։ Սովետական Պետական բյուջեն խաղաղ շինարարության բյուջե է։ Պետական բյուջեի միջոցների գերակշռող մասը ամեն տարի տրամադրվում է ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ֆինանսավորման նպատակին։

✪ Խաղաղության համար պայքարող Սովետական Միության արտաքին քաղաքականությունը դրսևորվել է ՄԱԿ-ի բոլոր սեսիաներում։

Դեռ 1946 թվականին, ՄԱԿ-ի 1-ին սեսիայում Սովետական Միությունը հանդես եկավ սպառազինությունների ընդհանուր

կրճատման և ատոմային զենքի արգելման ու
ոչնչացման մասին առաջարկություններով։
✪ 1947 թվականին, ՄԱԿ-ի Գլխավոր
Ասամբլեայի երկրորդ սեսիայում Սովետա-
կան Միությունը առաջարկություն մտցրեց
պատերազմի պրոպագանդան արգելելու և
պատերազմի օգտին պրոպագանդա մղողնե-
րին հանցագործ ճանաչելու մասին։
✪ 1948 թվականին, ՍՍՌՄ-ի դելեգա-
ցիան ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի երրորդ
սեսիայում առաջարկեց հինգ մեծ տերու-
թյունների սպառազինությունները մեկ տա-
րում կրճատել մեկ երրորդով և արգելել ա-
տոմային զենքի օգտագործումը ագրեսիայի
և մարդկանց մասսայական ոչնչացման հա-
մար։
✪ 1949 թվականին, ՄԱԿ-ի Գլխավոր
Ասամբլեայի չորրորդ սեսիայում Սովետա-
կան դելեգացիան նորից հանդես եկավ նոր
պատերազմի նախապատրաստությունը դա-
տապարտելու և խաղաղության ամրա-
պնդման նպատակով հինգ մեծ տերություն-
ների միջև խաղաղության Պակտ կնքելու մա-
սին առաջարկություններով։
✪ 1950 թվականին, ՄԱԿ-ի Գլխավոր
Ասամբլեայի հինգերորդ սեսիայում Սովե-
տական Միությունը առաջարկեց ընդունել



«դեկլարացիա նոր պատերազմի սպառնալի-
քը վերացնելու և խաղաղության ու ժողո-
վուրդների անվտանգության ամրապնդման
մասին»։
✪ Սովետական Միության խաղաղասիրա-
կան քաղաքականության նոր, վառ ապա-
ցույց հանդիսացան սովետական դելե-
գացիայի առաջարկները Փարիզում կայա-
ցած ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի վեցերորդ
սեսիայում։ Սովետական առաջարկները ել-
նում էին հետևյալ միջոցառումներից. ան-
համատեղելի հայտարարել Միավորված Ազ-
գերի կազմակերպության անդամությունը
հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկին մաս-
նակցելու և ուրիշ տերիտորիաներում ռազ-
մական բազաներ ստեղծելու հետ, անհապաղ
արգելել ատոմային զենքը և միջազգային
խիստ վերահսկողություն սահմանել այդ
զենքի նկատմամբ, հինգ մեծ տերություն-
ների սպառազինությունները մեկ տարում
կրճատել մեկ երրորդով և խաղաղության
պակտ կնքել այդ տերությունների միջև, դա-
դարեցնել պատերազմական գործողություն-
ները Կորեայում և երեք ամսվա ընթացքում
Կորեայից դուրս բերել բոլոր օտարերկրյա
զորքերը։
✪ 1949 թվականին սովետական ժողո-

վրդի ներկայացուցիչները մասնակցեցին
Փարիզում և միաժամանակ Պրագայում տե-
ղի ունեցած Խաղաղության կողմնակիցների
առաջին Համաշխարհային կոնգրեսին։ Ար-
տահայտելով խաղաղության միլիոնավոր
կողմնակիցների կամքը, Խաղաղության
կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի
Մշտական կոմիտեն 1950 թվականի մարտին
հանդես եկավ իր հայտնի Ստոկհոլմյան կո-
չով։ Ստոկհոլմյան կոչը պահանջում է, որ-
պեսզի արգելվի ատոմային զենքը և այն
առաջինն օգտագործող կառավարությունը
ճանաչվի պատերազմի հանցագործ։ Սովե-
տական 115 միլիոն 514 հազար 703 չափա-
հաս քաղաքացիներ ստորագրեցին այդ կոչի
տակ։

✪ 1951 թվականի մարտի 12-ին ՍՍՌՄ
Գերագույն Սովետը իր համերաշխությունը
հայտնելով Խաղաղության կողմնակիցների
երկրորդ Համաշխարհային կոնգրեսի կոչի
հետ և արտահայտելով առաջավոր մարդկու-
թյան կամքը, ընդունեց Օրենք Խաղաղության
Պաշտպանության մասին։ Խաղաղության
Պաշտպանության Օրենքով՝ պատերազմի
պրոպագանդա մղողները դատապարտվում
են որպես քրեական ծանր հանցագործներ։

✪ 1951 թվականի փետրվարին Բեռլի-



նում տեղի ունեցավ Խաղաղության Համաշ-
խարհային Խորհրդի առաջին սեսիան, որտեղ
ընդունվեց դիմում հինգ մեծ տերությունների
միջև Խաղաղության Պակտ կնքելու մասին։
Այդ դիմումի տակ իրենց ստորագրություն-
ներն են դրել ավելի քան 117 միլիոն սովե-
տական քաղաքացիներ։

✪ Խաղաղության համար սովետական ժո-
ղովրդի անշեղ ձգտումը վառ կերպով դրսե-
վորվեց Խաղաղության կողմնակիցների Հա-
մամիութենական կոնֆերանսներում, որոնք
տեղի ունեցան 1949, 1950 և 1951 թվական-
ներին Մոսկվայում։

✪ Խաղաղության համար սովետական կա-
ռավարության կողմից մղվող պայքարի կա-
րևորագույն փաստ հանդիսացավ 1949 թվա-
կանի դեկտեմբերին, խաղաղության մեծ
դրոշակակիր ընկեր Ի. Վ. Ստալինի ծննդյան
յոթանասունամյակի կապակցությամբ «Ժո-
ղովուրդների միջև խաղաղության ամրա-
պնդման համար» Միջազգային Ստալինյան
Մրցանակների սահմանումը։

✪ Սովետական Սոցիալիստական պետու-
թյանը խորթ են պատերազմի մարդատյաց
իդեաները։ Սոցիալիզմի, կոմունիզմի իդեա-
ներին անհամատեղելի են զավթողական
պատերազմների և ուրիշ ժողովուրդներին

ճնշելու իղձաները։ Սովետական երկրում
ռազմական միջոցները և զինված ուժերը
ծառայում են խաղաղության պաշտպանու-
թյան գործին։ ՍՍՌՄ-ում ատոմային զենքը
մեր երկիրը ամերիկա-անգլիական իմպե-
րիալիստների ոտնձգություններից և խաղա-
ղությունն ամբողջ աշխարհում պաշտպանե-
լու զենք է։ «...Սովետական Միությունը ոչ
միայն դեմ է ատոմային զենքի գործադրը-
մանը,— ասում է ընկեր Ստալինը,—
այլև կողմնակից է նրա արգելմանը, կողմ-
նակից է նրա արտադրության դադա-
րեցմանը։ Ինչպես հայտնի է, Սովետական
Միությունը մի քանի անգամ պահանջել է
արգելել ատոմային զենքը, բայց նա ամեն
անգամ մերժում է ստացել Ատլանտյան բլո-
կի տերություններից։ Այդ նշանակում է, որ
մեր երկրի վրա ԱՄՆ-ի հարձակման դեպ-
քում ԱՄՆ-ի կառավարող շրջանները կգոր-
ծադրեն ատոմային ռումբ։ Հենց այդ հան-
գամանքն էլ Սովետական Միությանն ստի-
պեց ունենալ ատոմային զենք՝ ագրեսորնե-
րին լիակատար պատրաստությամբ դիմավո-
րելու համար»։

✪ Ամբողջ աշխարհում խաղաղության հա-
մար մղվող պայքարին ակտիվ կերպով մաս-
նակցում են մեր երկրի պրոֆմիությունները։



Սովետական պրոֆմիությունները մյուս
երկրների դեմոկրատական պրոֆմիություն-
ների հետ միասին հանդիսանում են Պրոֆ-
միությունների Համաշխարհային Ֆեդերա-
ցիայի ստեղծման նախաձեռնողները (ֆեդե-
րացիան ստեղծվել է 1945 թվականի հոկ-
տեմբերին)։ Ֆեդերացիայի գործունեության
հիմնական նպատակն է՝ պայքարել ֆաշիզ-
մի լիակատար ոչնչացման համար, պատե-
րազմի դեմ։ Պրոֆմիությունների Համաշ-
խարհային Ֆեդերացիան միավորում է 60
երկրների 80 միլիոն աշխատավորների։

✪ Սովետական կանայք ակտիվորեն մաս-
նակցում են Կանանց Միջազգային Դեմո-
կրատական Ֆեդերացիայի գործունեությա-
նը։ Ֆեդերացիան, որը միավորում է աշ-
խարհի 64 երկրների 135 միլիոն կանանց,
հետևողական պայքար է մղում խաղաղու-
թյան համար, աշխատավոր կանանց տնտե-
սական ու քաղաքական իրավունքների հա-
մար, երեխաների կյանքի և ապագայի հա-
մար։

✪ Խաղաղության համար պայքարող աշ-
խարհի երիտասարդության ավանգարդում
ընթանում է սովետական երիտասարդությու-
նը։ Սովետական երիտասարդությունը ակ-
տիվորեն մասնակցում է 1945 թվականի նո-

 

յեմբերի 10-ին հիմնված Դեմոկրատական Երիտասարդության Համաշխարհային Ֆեդե-րացիայի աշխատանքներին, որի նպատակն է միավորել աշխարհի երիտասարդությանը՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և լավագույն ապագայի։ Ֆեդերացիան միավորում է 84 երկրների 75 միլիոն պատանիներ ու աղջիկներ։ Դեմոկրատական Երիտասարդության Համաշխարհային Ֆեդերացիային հարում է ավելի քան 5 միլիոն ուսանողներ միավորող Ուսանողների Միջազգային Միությունը։

Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը ոչ թե նրա թուլության նշանն է, այլ ընդհակառակը, դա սովետական ժողովրդի ուժի ու հզորության նշանն է։ Սովետական մարդիկ համոզված են, «որ եթե իմպերիալիստները հրահրեն երրորդ համաշխարհային պատերազմ,— ասում է ընկեր Մալենկովը,— ապա այդ պատերազմը գերեզման կհանդիսանա արդեն ոչ թե առանձին կապիտալիստական պետությունների համար, այլ համաշխարհային ամբողջ կապիտալիզմի համար»։

Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ



# 1952 ԹՎԱԿԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԵՌԱՄՍՅԱԿԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

## Թվեր և փաստեր

Սովետական ամբողջ ժողովուրդը խոր գոհունակությամբ ընդունեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1952 թվականի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։

1952 թվականի առաջին եռամսյակի պլանների կատարման հանրագումարները վառ կերպով ցույց են տալիս, որ բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ Սովետական Միության աշխատավորները լուրջ հաջողություններ են ձեռք բերել սոցիալիստական տնտեսության, կուլտուրայի, աշխատավորների կյանքի պայմանների էլ ավելի բարելավման ուղղությամբ, մի նոր նշանակալից քայլ կատարելով կոմունիստական շինարարության գործում։

✪ Հաղորդագրության մեջ ասված է, որ համախառն արտադրանքի արտադրության

եռամսյակային պլանը, արդյունաբերությու-
նը ամբողջությամբ վերցրած, կատարվել է
100,4 տոկոսով։ Ընդորում Սև մետալուր-
գիայի մինիստրությունը կատարել է 102
տոկոսով. Գունավոր մետալուրգիայինը՝
102, էլեկտրակայաններինը՝ 102, Մեքենա-
շինությանը և գործիքաշինությանը՝ 104,
ՍՍՌՄ Շինանյութերի արդյունաբերությանը՝
102, ՍՍՌՄ Մսեղենի և կաթնեղենի արդյու-
նաբերությանը՝ 102, ՍՍՌՄ Բամբակագոր-
ծությանը՝ 105 տոկոսով և այլն։

✪ Սովետական Միության աշխատավոր-
ների 1952 թվականի առաջին եռամսյակի
աշխատանքի արդյունքները նշանակալից
չափով բարձր են նրանց 1951 թվականի
առաջին եռամսյակի աշխատանքի ար-
դյունքներից։ Բավական է նշել, որ ՍՍՌՄ
ամբողջ արդյունաբերության համախառն
արտադրանքը 1952 թվականի առաջին
եռամսյակում, 1951 թվականի առաջին
եռամսյակի համեմատությամբ, աճել է 16
տոկոսով։ Դրա հետ միասին, արդյունաբե-
րության մեջ բանվորների աշխատանքի ար-
տադրողականությունը 1952 թվականի առա-
ջին եռամսյակում, 1951 թվականի առաջին
եռամսյակի համեմատությամբ, աճել է 10
տոկոսով։



✪ 1952 թվականի առաջին եռամսյակում
նոր առաջընթաց քայլ է կատարել ՍՍՌՄ
գյուղատնտեսությունը։ Այդ ամենից առաջ
արտահայտվեց այն բանում, որ կոլտնտե-
սությունները, մեքենատրակտորային կա-
յանները, սովխոզները այս տարվա գարնան
դաշտային աշխատանքներն սկսեցին ավե-
լի նախապատրաստված և տեխնիկապես
զինված, քան անցյալ տարիներին։

1952 թվականին սոցիալիստական գյու-
ղատնտեսությունն ստացավ գյուղատնտե-
սական դպրոցներն ու դասընթացները ա-
վարտած բարձրորակ կադրեր։ Մեխանիզա-
ցիայի դպրոցներում, մեքենատրակտորային
կայաններին ու սովխոզներին կից գործող
դասընթացներում անցած ձմեռվա ընթաց-
քում պատրաստվել ու վերապատրաստվել
են ավելի քան 500 հազար տրակտորիստ-
ներ ու տրակտորային բրիգադների բրիգա-
դիրներ, գյուղատնտեսության մեխանիզա-
ցիայի և էլեկտրիֆիկացիայի մեծ թվով աշ-
խատողներ։ 1951—1952 ուսումնական տա-
րում եռամյա ագրո-զոոտեխնիկական
դասընթացներում սովորել են մոտ երեք մի-
լիոն կոլտնտեսականներ և սովխոզների աշ-
խատողներ։

✪ Սոցիալիստական գյուղատնտեսության

աշխատողները նշանակալից հաջողություններ են հասել սոցիալիստական անասնաբուծության ասպարեզում։ 1952 թվականի առաջին եռամսյակում շարունակվում էր հանրային անասունների աճը։

Կոլտնտեսություններում անասունների գլխաքանակը 1952 թվականի առաջին եռամսյակի վերջին, 1951 թվականի առաջին եռամսյակի վերջին եղած գլխաքանակի համեմատությամբ, ավելացել է խոշոր եղջերավոր անասուններինը՝ 11 տոկոսով. այդ թվում կովերի գլխաքանակը՝ 14 տոկոսով։ Խոզերի գլխաքանակն աճել է 23, ոչխարներինը և այծերինը՝ 14, ձիերինը՝ 8 տոկոսով, թռչունների թիվը՝ 35 տոկոսով։

ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության սովխոզներում, այդ նույն ժամանակամիջոցում անասունների գլխաքանակն ավելացել է խոշոր եղջերավոր անասուններինը՝ 14 տոկոսով, այդ թվում կովերի գլխաքանակը՝ 14 տոկոսով։ Խոզերի գլխաքանակն աճել է 20, ոչխարներինը և այծերինը՝ 16, ձիերինը՝ 15 տոկոսով, թռչունների թիվը՝ 38 տոկոսով։

✪ 1952 թվականի առաջին եռամսյակում աննախընթաց հաջողություններ ձեռք բերվեցին ապրանքաշրջանառության ասպարե-



զում, որը արտահայտվեց ամենից առաջ մանրածախ ապրանքաշրջանառության, եռամսյակի համար սահմանված, պլանի գերակատարման մեջ։

✪ 1952 թվականի առաջին եռամսյակում պետական և կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառվել են, համադրելի գներով, 11 տոկոսով ավելի շատ ապրանքներ, քան 1951 թվականի առաջին եռամսյակում։ Ընդորում, ձկնամթերքներ՝ 24, ձու 28, յուղ և ճարպեր՝ 10, կաթ և կաթնամթերքներ՝ 43, պանիր՝ 32, շաքար՝ 20, մետաքսագործվածքներ՝ 28, տրիկոտաժեղեն՝ 17, կարի մեքենաներ՝ 36, ժամացույցներ՝ 18 տոկոսով ավելի և այլն։

1951 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, 1952 թվականի առաջին եռամսյակում զգալիորեն ավելացել է նաև կոլտնտեսային շուկաներում գյուղատնտեսական մթերքների, առանձնապես ալյուրի, թռչունների, ձվի, մրգերի, բանջարեղենի, մեղրի վաճառքը բնակչությանը։

✪ 1951 թվականին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ասպարեզում Սովետական Միության աշխատավորների ձեռք բերած հաջողությունների և աշխատանքի արտադրողականության

բարձրացման ու արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ 1952 թվականի ապրիլի 1-ից անցկացվեց մասսայական սպառման պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով հինգերորդ իջեցումը։

Պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով հինգերորդ իջեցման հետևանքով բնակչությունը կստանա զուտ շահում ավելի քան 23 միլիարդ ռուբլի։ Դա միայն պետական մանրածախ առևտրի գծով։ Եթե նկատի ունենանք, որ պետական առևտրի գծով կատարված գների նոր իջեցումը առաջ է բերել նաև գների իջեցում կոոպերատիվ և կոլտնտեսային առևտրի գծով, որից բնակչությունը կշահի ևս 5 միլիարդ ռուբլի, ապա գների նոր իջեցումից բնակչությունը կունենա ավելի քան 28 միլիարդ ռուբլու զուտ շահում։

✪ Սովետական Միության ժողովուրդների ընտանիքում, բոլշևիկների պարտիայի ու նրա իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, 1952 թվականի առաջին եռամսյակում լուրջ հաջողություններ են ձեռք բերել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։



Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1952 թվականի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրության մեջ ասված է, որ Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության 1952 թվականի առաջին եռամսյակի համախառն արտադրանքը, համեմատած 1951 թվականի առաջին եռամսյակի հետ, աճել է 12 տոկոսով։

✪ Արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության պլանը Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը կատարել է 107, Թեթև արդյունաբերության մինիստրությունը՝ 103, Առևտրի մինիստրությունը՝ 162, Սոցիալական ապահովության մինիստրությունը 102, «Հայձուկ» տրեստը 174 տոկոսով և այլն։

✪ Արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության 1952 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարվել է. էլեկտրաէներգիա՝ 101, գեներատորներ՝ մինչև 100 կիլովատ կարողությամբ՝ 114, 100 կիլովատից ավելի կարողությամբ՝ 120, հիդրոտուրբիններ՝ 117, պահեստի ավտոմասեր՝ 111, մետաղահատ դազգահներ՝ 105,

պոմպեր՝ 150, մուլխտե ձողեր 114, կոն-
սերվներ՝ 123, միս՝ 178, ձուկ՝ 179, մակա-
րոնեղեն 124 տոկոսով և այլն։

Համախառն արտադրանքի պլանը կա-
տարել, բայց արտադրանքի գլխավոր տե-
սակի պլանը չեն կատարել մի շարք արտա-
դրական ձեռնարկություններ, այդ թվում՝
Հանքային ջրերի տրեստը, Երևանի Կաթի
գործարանը, Կարի առաջին ֆաբրիկան և
այլն։ Համախառն արտադրանքի և արտա-
դրանքի գլխավոր տեսակների պլանը նա-
տուրայով չեն կատարել Ալավերդու Քիմիա-
կան գործարանը, Սևանգէսը, Կենգէսը, Ար-
թիկ տուֆը, Հրուշակեղեն-մակարոնի ֆաբ-
րիկան, Հայպանիրտրեստը և այլն։

✪ Սովետական Հայաստանի աշխատա-
վորները է՛լ ավելի լուրջ հաջողությունների
հասան 1952 թվականի առաջին եռամսյա-
կում սոցիալիստական գյուղատնտեսության
զարգացման գործում։ Այս տարվա առաջին
եռամսյակում հաջողությամբ ավարտվեցին
գարնանացանի նախապատրաստական աշ-
խատանքները։ Այս տարի, անցյալ տարվա
համեմատությամբ ավելի լավ կատարվեց
գյուղատնտեսական ինվենտարի վերանորո-



գումը, ըստորում գութանների նորոգման
պլանը կատարվեց՝ 120, շարքացաններինը՝
115, կուլտիվատորներինը՝ 158 տոկոսով։

✪ 1952 թվականի գարնան գյուղատնտե-
սական աշխատանքներին առաջին եռամսյա-
կում առանձնապես լավ նախապատրաստ-
վեցին ռեսպուբլիկայի մեքենատրակտորա-
յին կայանները։ Մինչև 1952 թվականի
ապրիլի 1-ը տրակտորների աշնան-ձմեռա-
յին նորոգումը կատարվել էր 108 տոկոսով,
կոմբայններինը՝ 68, կալսիչներինը՝ 61, գու-
թաններինը՝ 101, շարքացաններինը՝ 113 և
կուլտիվատորներինը՝ 151 տոկոսով։

✪ 1952 թվականի առաջին եռամսյակում
մանրածախ ապրանքաշրջանառության պլա-
նը կատարվել է 97 տոկոսով, այդ թվում
առևտրի ցանցում՝ 97 տոկոսով և հանրային
սննդի ցանցում՝ 94 տոկոսով։

Պլանը չեն կատարել՝ Հայկական ՍՍՌ
Առևտրի, Սննդարդյունաբերության և Մսե-
ղենի ու կաթնեղենի արդյունաբերության մի-
նիստրությունները, «Գլավռիբսբիտ»-ի և «Գը-
լավխիմսբիտ»-ի Հայկական բաժանմունքնե-
րը, «Հայարհխորհուրդ» արհեստագործական
կոոպերացիան, ՀՍՍՌ Հաշմանդամների կոո-
պերացիայի միությունը։ Մանրածախ ապ-
րանքաշրջանառության պլանը կատարել են՝

«Յուվելիրտորգ»-ի Երևանի ռեսպուբլիկական գրասենյակը՝ 135 տոկոսով, «Գլավգաստրոնոմ»-ի Հայկական գրասենյակը՝ 120, «Գըլավկոոպսբիտ»-ի Հայաստանի Ռեսպուբլիկական Վարչությունը՝ 107 տոկոսով, «Գլավունիվերմագ»-ի Երևանի ունիվերմագը՝ 102, «Հայկոոպ» սպառողական կոոպերացիան՝ 101 տոկոսով:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1952 թվականի պետական պլանի կատարման արդյունքները ցույց են տալիս մեր երկրի մարդկանց անձնուրաց աշխատանքը իրենց սոցիալիստական Հայրենիքի է՛լ ավելի բարգավաճման, հզորության ամրապնդման ուղղությամբ: Սովետական Միության աշխատավորները ոգևորված այդ հաջողություններով, պայքարում են 1952 թվականի երկրորդ եռամսյակի պլանների կատարման ու գերակատարման համար, կոմունիզմի կառուցման տեմպերն արագացնելու, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման անառիկ ամրոց՝ ՍՍՌՄ-ի հզորու-
թյան բազմապատկման համար:

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

---



# ԱԳԻՏԱՏՈՐ ՊԵՐՃ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ «ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ» ԹԵՄԱՅՈՎ

Լենինականի տեքստիլ կոմբինատի մեխանիկական ցեխի բանվոր-բանվորուհիների համար հաճախակի հետաքրքիր զրույցներ է կազմակերպում ագիտատոր ընկեր Պերճ Մարտիրոսյանը:

Բավարարելով ունկնդիրների ցանկությունը, լուրջ նախապատրաստվելուց հետո, օրերս նա զրույց կազմակերպեց «Սովետական հայրենասիրությունը» թեմայով, որի շարադրանքը բերում ենք ստորև:

— Սովետական հայրենասիրություն արտահայտության հետ է կապված այն ամենը,—ասում է ագիտատոր Պերճ Մարտիրոսյանը,— ինչ որ մոտ ու թանկ է սովետական մարդու սրտին: Սոցիալիստական Հայրենիքի սերն ուժ է տալիս մեզ, մեր աշխատանքը դարձնում նշանակալից ու հրճվալի: Մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներն իրենց ուժերն ու գիտելիքները նվիրաբերում են Հայ-

րենիքի բարօրության գործին, երիտասարդական ամբողջ խանդավառությամբ աշխատում են կոմունիզմի կառուցման համար։

Սովետական մարդը հպարտանում է իր երկրով։ Եվ ինչպես չհպարտանալ, երբ նրա անծայրածիր տարածություններում մարդկության բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ հաղթանակել է նոր կյանքը, ուր չկան շահագործողներ ու կեղեքիչներ։ Աշխարհում առաջին անգամ մեզ մոտ ժողովուրդը դարձել է հայրենի երկրի բոլոր անթիվ-անհամար գանձերի լիիշխան տերը։

1946 թվին, Լենինգրադում, պարտիական ակտիվի ժողովում և գրողների ժողովում Անդրեյ Ալեքսանդրովիչ Ժդանովը ասում էր. «Որտե՞ղ դուք կգտնեք այսպիսի ժողովուրդ և այսպիսի երկիր, ինչպես մեզ մոտ։ Որտե՞ղ դուք կգտնեք մարդկանց այնպիսի ըսքանչելի հատկություններ, ինչպիսիք հանդես բերին մեր սովետական մարդիկ Հայրենական Մեծ պատերազմում և ինչպիսիք նրանք հանդես են բերում ամեն օր աշխատանքային գործերում, անցնելով տնտեսության և կուլտուրայի խաղաղ զարգացմանն ու վերականգնմանը։ Յուրաքանչյուր օրը մեր ժողովրդին բարձրացնում է շարունակ դեպի վեր ու ավելի վեր։ Մենք այսօր այն չենք



ինչ էինք երեկ, և վաղը կլինենք ոչ այն, ինչ այսօր ենք։ Մենք փոխվեցինք ու աճեցինք այն մեծագույն վերափոխումների հետ, որոնք արմատապես փոխեցին մեր երկրի դեմքը»։

Սովետական հայրենասիրությունը ծընունդ է առել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փոթորիկների մեջ։ Բոլշևիկյան պարտիայի ստեղծողներ Լենինի և Ստալինի գլխավորությամբ Ռուսաստանի ժողովուրդները ոտքի ելան իրենց բախտի ու երջանիկ ապագայի շողն աչքերում, տապալեցին ցարական ինքնակալությունը, ապա ժամանակավոր կառավարությունը և ստեղծեցին բանվորագյուղացիական իշխանություն։

Հետագայում, իրենց բախտի տերը դարձած սովետական մարդիկ ավելի ու ավելի տոգորվելով սովետական հայրենասիրությամբ, սեփական ուժերով ու միջոցներով վերականգնեցին ծայր աստիճանի քայքայված երկրի տնտեսությունը։ Ստալինյան հնգամյակների տարիներին անձնվեր աշխատանքով հզորացրին մեր երկիրը, դարձրին անառիկ ամրոց։ Սովետական մարդկանց վառ հայրենասիրությունը մի անգամ չէ որ փրկել է մեր երկիրը իմպերիալիստների ոտնձգություններից։ Հանուն Սովետական Հայրենի-

քի կողը շուրթերին մեր մարդիկ գնացին գրոհի և արյաղան հողից դուրս վռնդեցին իմպերիալիստական 14 պետությունների զինված ուժերին։ Հանուն Հայրենիքի, հանուն Ստալինի նրանք ելան գրոհի մեր Հայրենիքի հողը ներխուժած հիտլերյան Գերմանիայի զինված ուժերի դեմ և հաղթեցին։ Հանուն հայրենիքի զոհվեցին Գաստելլոն, Օլեգ Կոշևոյը, Մատրոսովը, Զոյա Կոսմոդեմյանսկայան, Հոման Ավետիսյանը և ուրիշներ, որոնց անունները գրվեցին մեր Հայրենիքի տարեգրության փառավոր էջերում։

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո, սովետական ժողովուրդը ցուցաբերեց հայրենասիրական նվիրվածություն հետպատերազմյան, ստալինյան հնգամյակի տարիներին։ Կարճ ժամանակում վերականգնվեց ֆաշիստական հորդաների կողմից ավերված տնտեսությունը և արդեն 1950 թվականին զգալիորեն ավելի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանք թողարկվեց, քան 1940 թվականին։ Եթե այժմ մենք ունենք հզոր ինդուստրիալ-կոլխոզային տնտեսություն, ապա նրա ըստեղծողը սովետական հայրենասիրությամբ տոգորված հերոս ժողովուրդն է։

Սովետական հայրենասիրությունը նոր



տեսակի հայրենասիրություն է, քանի որ նա հիմնված է մարդկանց սոցիալիստական հարաբերությունների վրա և համընկնում է բարոյա-քաղաքական միասնությամբ զոդված ՍՍՌՄ ժողովուրդների արմատական շահերի հետ։

«Սովետական հայրենասիրության ուժն այն է,— ուսուցանում է ընկեր Ստալինը,— որ նրա հիմքը ոչ թե ռասսայական կամ նացիոնալիստական նախապաշարմունքներն են, այլ ժողովրդի խորին նվիրվածությունն ու հավատարմությունը իր Սովետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորության եղբայրական համագործակցությունը։ Սովետական հայրենասիրության մեջ ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային տրադիցիաները և Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը»։

Ի հակադրություն բուրժուական նացիոնալիզմի, սովետական հայրենասիրությունը ոչ թե անջատում, այլ սերտորեն համախմբում է մեր երկրի բոլոր ազգերին մի միասնական եղբայրական ընտանիքի մեջ։ Այդ է ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ ու միշտ ամրապնդվող բարեկամության հիմքը։ Միաժամանակ Սովետական Միության ժողո-

վորդները հարգում են արտասահմանյան երկրների ժողովուրդների իրավունքներն ու անկախությունը և միշտ պատրաստակամություն են ցուցաբերում հաշտ ու խաղաղ ապրելու հարևան պետությունների հետ։ Այդ է Սովետական Միության և ազատասեր ժողովուրդների աճող ու ամրապնդվող կապերի հիմքը։

Մեր մայր Հայրենիքը ոչինչ չի խնայում, որպեսզի սովետական մարդիկ ապրեն ավելի լավ ու երջանիկ, որպեսզի երիտասարդությունը գիտելիքներ և ուժ ստանա, աճի կայտառ, կենսախինդ։ Սովետական պատանիներն ու աղջիկներն անսահմանորեն երախտապարտ են Հայրենիքին է՛լ ավելի երջանիկ ապագայի համար, որ բացված է յուրաքանչյուրի առջև, ամեն մի մասնագիտություն տիրապետելու հնարավորության համար, վաղվա օրվա հանդեպ վստահության համար, այն վիթխարի միջոցների համար, որ պետությունն առատաձեռնությամբ ծախսում է ուսման վրա, ֆիզիկական կուլտուրայի վրա, հանգստյան տների, կուլտուրայի տների, պալատների, գրադարանների վրա։

Սովետական մարդիկ իրենց հայրենասիրությունը ամենից առաջ արտահայտում



են աշխարհում ամենից առաջավոր մեր պետական ու հասարակական կարգի նկատմամբ, բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության նկատմամբ, մեր առաջնորդ, հայր և ուսուցիչ մեծ Ստալինի նկատմամբ, անհուն նվիրվածությամբ։

Հանձին ընկեր Ստալինի, ՍՍՌՄ ժողովուրդները տեսնում են Հայրենիքի հանդեպ սիրո, հերոսության իրենց իղձերի ու ձգտումների մարմնավորումը։ Ստալինի անունը շուրթերին անձնվիրաբար աշխատում են մեր երկրի բանվորները, կոլտնտեսականները, սովետական ինտելիգենցիան, որպեսզի ավելի հզորանա ու գեղեցկանա մեր Հայրենիքը, որպեսզի ավելի երջանիկ ապրեն սովետական երկրի մարդիկ։

Սովետական հայրենասերի հպարտության զգացմունքը հիմնված է սոցիալիստական իրավակարգի մեծ առավելությունների վրա։ Սովետական մարդկանց մեջ հայրենասիրության դաստիարակումը նպատակ ունի՝ է՛լ ավելի բարձրացնել աշխատանքային կարգապահությունը, սոցիալիստական սեփականության հանդեպ հոգատարությունը, պետական ու հանրային շահերը ամեն ինչից բարձր դասելը։

Սովետական մարդկանց համաշխարհային

պատմական հաղթանակները ոգեւորում ու խանդավառում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորներին։ Բոլոր երկրների աշխատավորները իրենց ազատագրական պայքարի ընթացքում հույսով են նայում մեր Հայրենիքին, որ կանգնած է խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի ավանգարդում, որպես անհաղթահարելի հզոր ուժ։

Ամրապնդելով իրենց Հայրենիքը՝ խաղաղության դրոշակակիր հանդիսացող Սովետական Միությունը, սովետական մարդիկ գիտակցում են, որ դրանով իսկ ամրապնդում են խաղաղության գործն ամբողջ աշխարհում։

Այժմ, հարազատ Լենինական քաղաքի և մեր գործարանի հայրենասերների մասին։ Եթե անցյալ տարի պլանից դուրս Հայրենիքին մի քանի միլիոն ռուբլու արտադրանք տվեց Լենինականի աշխատավորությունը, ապա դրանում դրսևորվեց մեր քաղաքի արտադրության աշխատողների վառ հայրենասիրությունը։ Մեր գործարանի կո-



լեկտիվը պլանից դուրս մեծ քանակությամբ արտադրանք է տվել և ապահովել իր առաջավոր տեղը մեր քաղաքի ձեռնարկությունների շարքում։ Այս տարի մենք աշխատում ենք բազմապատկված եռանդով։ Օրերս ամփոփվեցին 1952 թվականի առաջին եռամսյակի արդյունքները. պարզվեց, որ գործարանի կոլեկտիվը միայն առաջին եռամսյակին 378 հազար ռուբլու արտապլանային արտադրանք է տվել, իջեցրել է ինքնարժեքը, բարձրացրել է արտադրողականությունը, խնայել հումքը։ Մեր ցեխը ետ չի մնում։ Ցեխի անվանի մարդիկ՝ փականագործ Ս. Հովհաննիսյանը, խառատ Ա. Մուրադյանը, մեքենավար Ս. Ավետիսյանը և ուրիշներ առաջին եռամսյակին կատարեցին 5—6 ամսվա առաջադրանք։ Ես, որպես փականագործ, առաջին եռամսյակին կատարել եմ երկու եռամսյակի առաջադրանք։ Այսօր ես արդեն աշխատում եմ հուլիս ամսվա հաշվին։

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## Թվեր և փաստեր

*Աշխատավորների աղքատացման աճում— այս է կապիտալիստական հասարակարգի օրենքը։ Այդ օրենքն առանձնահատուկ ուժով է գործում այժմ, երբ իմպերիալիստները անզուսպ կերպով համաշխարհային երրորդ պատերազմ են նախապատրաստում։ Սպառազինությունների մրցավազքը չտեսնված շահույթներ է բերում միլիարդատերերին ու միլիոնատերերին՝ ի հաշիվ աշխատավորների դաժան կեղեքման։ Բոլոր կապիտալիստական երկրներում ավելանում են հարկերը, բարձրացնում են մասսայական սպառման ապրանքների գները, աճում է գործազրկությունը։*

✪ *Ինչպե՞ս է ապրում այս օրերին ամերիկյան շարքային բանվորի ընտանիքը։ Այդ մասին վերջերս պրոֆմիութենական «Յունայտեդ էլեկտրիկալ նյուս» թերթի էջերում պատմում էր «Վեստինհաուզ» ֆիրմայի գոր-*



*ծարանի որակյալ բանվորի կին, երկու փոքրիկ երեխաների մայր Այրին Բրաունը։ Նա գրել է.*

*«Ես արդեն չեմ հիշում, թե վերջին անգամ մենք երբ ենք միս կերել։ Ներկա պայմաններում հագուստ գնելու մասին մտածելն անգամ ավելորդ է։ Մենք ամենևին ի վիճակի չենք հագուստ գնել ոչ երեխաների, ոչ էլ մեզնից որևէ մեկի համար։ Ամեն անգամ, երբ թվում է, որ արդեն մի քանի դոլար է մնացել, որևէ մեկը հիվանդանում է, և ստիպված ենք վճարել թե բժշկին, և թե դեղերի համար։ Շատ դեպքերում անհնարին է դառնում փող ետ գցել նույնիսկ կինոյի համար»։*

*Այրինի ամուսինը՝ Հելենդ Բրաունն ավելացնում է.*

*«Վեստինհաուզ» կոմպանիան և այլ արդյունաբերողներ շարունակ ավելի են հարստանում Կորեայում մղվող պատերազմի հետևանքով, իսկ մենք աղքատանում ու աղքատանում ենք»։*

✪ *ԱՄՆ-ի ցածր աշխատավարձ ստացող աշխատավորների հարկերը աճել են 8—10 անգամ՝ նախապատերազմյանի համեմատությամբ։ Ամերիկյան բանվորների և ծառայողների աշխատավարձի 41 տոկոսը խը-*

լում են հարկերը։ Համաշխարհային երկ-
րորդ պատերազմից առաջ յուրաքանչյուր
ամերիկացի կառավարության ռազմական
ծախսերի համար տարեկան միջին հաշվով
հատկացնում էր 8 դոլար 75 ցենտ, իսկ
այս տարի պետք է հատկացնի 413 դոլար։
ԱՄՆ-ում անընդհատ աճում է թանկու-
թյունը։ Միայն 1952 թվականի հունվարից
մինչև փետրվարը առաջին անհրաժեշտու-
թյան ապրանքների գներն ավելացան 22
տոկոսով։

✪ Առանձնապես սոսկալի է ամերիկյան
գործազուրկների վիճակը։ Սովամահություն՝
ահա որն է նրանց բաժինը։ Ամերիկայի
Միացյալ Նահանգներում լրիվ և մասնակի
գործազուրկների թիվը հասնում է մոտ 16
միլիոնի։ Պաշտոնական տվյալների համա-
ձայն՝ երկրում գործազուրկների թիվը մեկ
երրորդով ավելի է, քան եղել է 1946 թվա-
կանին։ Մի քանի արդյունաբերական կենտ-
րոններում, օրինակ՝ Դետրոյտում, յուրա-
քանչյուր երեք բանվորից մեկը գործա-
զուրկ է։

✪ Այն ժամանակ, երբ ԱՄՆ-ի աշխատա-
վորները գալարվում են քաղցի ճիրաննե-
րում, ամերիկյան կապիտալիստները ծով
հարստություն են դիզում։ Ամերիկյան կա-



պիտալիստական մոնոպոլիաների շահույթ-
ները ներկայումս երկու անգամ բարձր են
նրանց այն շահույթներից, որ ստանում էին
համաշխարհային երկրորդ պատերազմի
տարիներին և 7 անգամ բարձր՝ նախապա-
տերազմյան տարիների շահույթներից։

✪ Պատերազմի իմպերիալիստական քա-
ղաքականությունից և սովից խիստ տառա-
պում են Անգլիայի աշխատավորները։ Անգ-
լիայում ալյուրի գինը միայն 1951 թվա-
կանին բարձրացավ 25 տոկոսով։ Շաքարի,
կաթի և ձվի գները անցյալ տարվա համե-
մատությամբ բարձրացել են 20 տոկոսով,
իսկ պանրինը՝ 70, ձկնեղենինը՝ 30, հա-
գուստեղենինը՝ 20 տոկոսով և այլն։ Գների
հսկայական աճման պայմաններում՝ անգ-
լիական աշխատավորների աշխատավարձը
«սառեցված է»՝ իր խիստ ցածր մակարդա-
կով։ Բացի դրանից, անգլիական բանվոր-
ներն ու ծառայողները ստիպված են իրենց
աշխատավարձի կեսից ավելին հատկաց-
նել զանազան հարկեր վճարելու համար։

✪ Անգլիացի Է. Պիտերը Նորվիչից Սովե-
տական Միություն ուղարկած իր նամակում
այս տարվա սկզբին գրել է.

«Անցան ծննդյան տոները, դրանց հետ
էլ՝ այն փոքր բավականությունը, որ թույլ

տվինք մեզ, թեկուզ և թանկ գնով զարգացնելու մեր սեղանը։ Այժմ արդեն ամբողջ տարվա ընթացքում մենք չենք կարող նման որևէ բան թույլ տալ... Անգլիայի աշխատավորների դժվարությունները շատ շատ են։ Այդ դժվարություններն արտահայտվում են այն բանում, որ պակասեցվում է քարտերով մեզ տրվող օրապահիկը և շարունակ ուժեղանում են ամեն տեսակի սահմանափակումները։ Անընդհատ իջնում է ժողովրդի կենսամակարդակը, որովհետև առաջին անհրաժեշտության բոլոր առարկաների գները շարունակ աճում են»։

✪ «Ֆրանսիայում կյանքը տարեցտարի ավելի ու ավելի դժվարին է դառնում,— գրում է ֆրանսուհի Ժորժետ Ս-ն՝ Սովետական Միություն ուղարկած իր նամակում։ Նոր պատերազմի նախապատրաստման քաղաքականությունը, որ ամերիկացիների թելադրանքով վարում է մեր կառավարությունը, թանկ է նստում աշխատավորների վրա։ Գներն աճում են, իսկ աշխատավարձը մնում է միևնույն մակարդակի վրա։ Մեր քաղաքում բնակչության 40 տոկոսն ապրում է բնակարանային վատ պայմաններում։ Բայց մեր կառավարությունը բնակարանային շինարարության փոխարեն միլիարդավոր ֆրանկներ է ծախսում Վյետնամում պատերազմ մղելու և Թունիսում պատժիչ ջոկատներ պահելու համար։



Ֆրանսիական ժողովրդի հայացքն ուղղված է սոցիալիզմի երկրին, այն երկրին, որտեղ չկան ոչ ճգնաժամեր, ոչ գործազրկություն, որտեղ տարեցտարի աճում է աշխատավորների կենսամակարդակը»։

✪ «Ամեն առավոտ,— գրում է Լիբերասոն» թերթը,— ֆրանսիացի աշխատավորը ահ ու սարսափով է բացում թերթը, սպասելով, որ այնտեղ նոր հաղորդագրություն կգտնի առաջին անհրաժեշտության ապրանքների գների բարձրացման մասին»։

1951 թվականի հունվարի 15-ից մինչև 1952 թվականի հունվարի 15-ը ժամանակամիջոցում Ֆրանսիայում լայն սպառման ապրանքների գները բարձրացել են հետևյալ կերպ. հացինը՝ 39 տոկոսով, խմորեղենինը՝ 46 տոկոսով, մսինը՝ 58 տոկոսով, ձկնեղենինը՝ 140 տոկոսով և այլն։ Փարիզի մետրոյի երթևեկելու տոմսերի գինը բարձրացել է 52 տոկոսով։ Նույն այդ ժամանակամիջոցում գազի վարձն ավելացել է 28 տոկոսով, էլեկտրաէներգիայինը՝ 24 տոկոսով։ Նախապատերազմյանի համեմատությամբ Ֆրանսիայում հարկերը և մանրա-

ծախ գներն ավելացել են տասնյակ անգամ։

✪ Դե Գասպերի կառավարությունը ծայրահեղ աղքատության է հասցրել իտալական ժողովրդին։ 1951 թվականի վերջերին Իտալիայում լրիվ և մասնակի գործազուրկների թիվը հասավ 4 միլիոնի։ Այդ մարդկանց դրությունը, որոնք չունեն գոյության ոչ մի միջոց, սոսկալի է։ Չափազանց ծանր պայմաններում են ապրում և այն իտալացիները, որոնք աշխատանք ունեն։ Կառավարական այն պաշտոնական հաշվարկումներով, որոնք կատարվեցին անցյալ տարվա օգոստոսի կեսերին, իտալական ամեն մի ընտանիք, որպեսզի կարողանա ծայրը ծայրին հասցնել, պետք է ամսական միջին հաշվով մոտ 63 հազար լիրայի վաստակ ունենա։ Մինչդեռ իտալական հանքագործները ամսական վաստակում են ընդամենը մոտ 25 հազար լիրա, իսկ շատ այլ պրոֆեսիայի բանվորներ՝ դրանից էլ պակաս։ Լիրայի գնողունակությունը չափազանց ցածր է և անընդհատ ընկնում է։

✪ Սովետների երկրին ուղղած իր նամակում իտալացի Ջուզեպ Պ-ն գրում է.

«Իտալիայում իշխում են սովն ու գործազրկությունը։ Մարդիկ թափառում են փողոցներում՝ մուրացկանությամբ զբաղվելով։



Օրեցօր թանկանում են սննդամթերքների և առաջին անհրաժեշտության այլ առարկաների գները։ Մարդ զուրկ է մի զույգ կոշիկ, մի զգեստ գնելու հնարավորությունից։ Եթե բանվորները աշխատանք և հաց են խնդրում, նրանց դեմ ոստիկաններ են ուղարկում, որոնք ծեծում են նրանց»։

✪ Ժողովրդի թշվառ դրության, գործազրկության, իրավազրկության մասին են պատմում կապիտալիստական նաև այլ երկրների աշխատավորները՝ Սովետական Միությանն ուղարկած իրենց նամակներում։

Ահա Բելգիայից Մորիս Ժ-ի ուղարկած նամակը.

«Ես բազմիցս լսել եմ ՍՍՌՄ-ում մթերքների և լայն սպառման այլ ապրանքների գների իջեցման մասին։ Մեզ մոտ պատկերը բոլորովին այլ է։ Մթերքների և արդյունաբերական ապրանքների գները օրեցօր աճում են։ Հավանաբար Ձեզ դժվար կլինի պատկերացնել այն աղքատությունը, որ տիրում է մեզ մոտ՝ Բելգիայում»։

Նորվեգիայից Օլաֆ Բ-ն գրում է.

«Այստեղ՝ Նորվեգիայում այժմ սարսափելի բարձր են գները։ Շարունակ աճում են բոլոր անհրաժեշտ կենսական ապրանքների գները։ Կառավարությունը սեղմում է մեզ,

րովհետև նա պետք է կատարի իր բացահայտ և գաղտնի այն ռազմական պարտավորությունները, որ կնքել է ժողովրդի թիկունքում»։

Հոլլանդացի Ս. Ֆ-ն Սովետական Միություն ուղարկած իր նամակում պատմում է.

«Հրճվանքով ես իմացա Սովետական Միության աշխատավորների հիանալի հաջողությունների մասին, որոնք կարճ ժամկետում վերականգնեցին երկիրը այն բարբարոսական ավերումներից հետո, որ պատճառել էին գերմանական ֆաշիստները։

Ինչպիսի՜ հսկայական տարբերություն այն դրությունից, որ գոյություն ունի մեր երկրում։ Մեզ մոտ դեռ շատ տեղ են մնացել փլատակները։ Ռազմական ծախսերի ավելացման պատճառով բնակարանային շինարարությունը կանգ է առել։ Աշխատավորների կենսամակարդակը սիստեմատիկորեն իջնում է, սննդամթերքների և առաջին անհրաժեշտության այլ ապրանքների գները աճում են, իսկ աշխատավորների աշխատավարձը չի բարձրացվում»։

✪ Տիտո-Ռանկովիչի ֆաշիստական կլիկը Հարավսլավիան տաժանավայր է դարձրել աշխատավորների համար։ Խոշոր ձեռնարկություններում, որոնք հսկայական շա-



հույթներ են բերում օտարերկրյա կապիտալիստներին և տիտոյական բուրժուազիային, հարկադիր աշխատանք է կիրառվում։ Այսպես, օրինակ՝ տիտոյականները բռնությամբ մոտ կես միլիոն մարդ են քշել-տարել Բոսնայի, Խորվաթիայի և Սլովինայի հանքերը։ Հարյուր հազարավոր մարդիկ մոբիլիզացիայի են ենթարկվել աշխատելու զանազան ռազմական կառուցվածքների շինարարության վրա։

Հարավսլավական ձեռնարկություններում աշխատանքային օրվա տևողությունն է 10—14 ժամ, իսկ աշխատավարձն այնքան քիչ է, որ աշխատավորները սովի ու թշվառության են մատնված։

✪Սոսկալի թշվառ վիճակում է թուրք ժողովրդի ճնշող մեծամասնությունը։ Վաշինգտոնի պահանջով՝ Թյուրքիայի պարագլուխները ավելացնում են ռազմական ծախսերը, և դրան էլ համապատասխան՝ հարկերը։ Արագորեն աճում է թանկությունը։ Բանվորների միջին ամսական աշխատավարձը 50—60 լիրայից չի անցնում։ Այդ չնչին աշխատավարձը, ինչպես վկայում է թուրքական «Սոն տելեգրաֆ» թերթը, չի ծածկում նույնիսկ հացի ծախսը։

Ամերիկյան կոնկուրենցիայի պատճառով
Թուրքական ձեռնարկությունները փակվում
են։ Երկրի աշխատունակ բնակչության
միայն 40 տոկոսն է, որ աշխատանք ունի։
Թյուրքիայում, բանվորների նման, քաղ-
ցում են և գյուղացիները։ Պաշտոնական
տվյալների համաձայն՝ երկրում կան 2,5
միլիոն հողազուրկ գյուղացիական ըն-
տանիքներ, որոնք բաղկացած են 12 մի-
լիոն մարդուց և կազմում են երկրի ամբողջ
բնակչության 60 տոկոսը։ Բուրժուական
«Վաթան» թերթը գրում է, որ Թուրքական
գյուղում «հազվադեպ կպատահի մի մարդ,
որ կարողանա իր անունը գրել։ Գյուղացի-
ները պատսպարվում են գետնափոր տնե-
րում, որտեղ լույս է թափանցում տանիքի
փոքրիկ երթիկից։ Ձմռանն այդ երթիկը
փակվում է, և հյուղակում օդը դառնում է
անտանելի, իսկ տան պատերն ու հատակը
խոնավանում»։

Թյուրքիայի աշխատավորները զուրկ են
բժշկական օգնությունից։ Հիվանդություն-
ները հնձում են երկրի բնակչությանը։ Կա-
ռավարական տվյալներով՝ Թյուրքիայում
անցյալ տարի նոր ծնված 800 հազար երե-
խաներից 400 հազարը մահացել են։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

«Օգնություն ՀամԿ(բ)Պ պատմությունն ուսումնա-
սիրող խմբակների պրոպագանդիստներին»: Մեթոդա-
կան հոդվածների ժողովածու։ 360 էջ, գինը 4 ռ.
95 կոպ:

Ն. ՇՉԵԴՐԻՆ (Մ. Ե. Սալտիկով).— «Ընտիր երկեր»:
Առաջին հատոր։ 655 էջ, գինը 19 ռ. 10 կոպ.։

Ն. ՇՉԵԴՐԻՆ (Մ. Ե. Սալտիկով).— «Ընտիր երկեր»:
Երկրորդ հատոր։ 823 էջ, գինը 21 ռ. 35 կոպ.։

ՄՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ.— «Միլիոնատեր կոլտնտեսու-
թյուններում», ակնարկների ժողովածու։ 89 էջ, գինը
1 ռ. 20 կոպ.։

Ա. ԹՈՒՄԱՆՅԱՆ.— «Բարձր արտադրողականու-
թյան հզոր աղբյուրը»: 47 էջ, գինը 55 կոպ.։

Վ. ՀԱԿՈԲՅԱՆ.— «Հողի մշակման սիստեմը բամ-
բակացան շրջանների ցանքաշրջանառություններում»:
20 էջ, գինը 25 կոպ.:

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ.— «Խաղողագործության ագրոցու-
ցումները»: 64 էջ, գինը 80 կոպ.։

---

Պատ. խմբագրի տեղակալ
Տ. ՎԱՐԺԱՊԵՏ